Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

23

## № 7 (109)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ՇԵՐԱՄԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն չերամապահությամբ զբաղվող շրջանների սովետական և պարտիական կազմակերպությունների առջև դնելով որպես կարևորագույն խնդիրներից մեկը՝ տնամերձ և մանավանդ հանրային չերամապահության հետագա զարգացման հիման վրա, հասնել հինգ տարվա ընթացքում բոժոժի արտադրության առնվազն կրկնապատիկ ավելացման և մի տուփ գրենայից առնվազն 50 կիլոգրամ բոժոժի բերքատվության՝* որոշեցին.

### 1. ՇԵՐԱՄԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԿԵՐԻ ԲԱԶԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

1. *Սահմանել 1941—1947 թվականներին կոլխոզներում պարտադիր կարգով թթենի տնկելու հետևյալ պետական պլանը՝*

| Ռեսպուբլիկաների, երկրամասերի և մարզերի անունը | Կոլխոզներում բրնձի ցանքի 1941-1947 թ. թ. պետական պլանը | | | |
|---|---|---|---|---|
| | Թփային, ցածրաբուն և բնային պլանտացիաներ (հազար հեկտար) | | Բարձրաբուն, գծային և այլ ծառեր (միլիոն արմատ) | |
| | Ընդամենը | Այդ թվում 1941 թվ. | Ընդամենը | Այդ թվում 1941 թվ. |
| 1 | 2 | 3 | 4 | 5 |
| Ուզբեկական ՍՍՌ | 40,0 | 6,0 | 70,0 | 6,0 |
| Թուրքմենական ՍՍՌ | 5,4 | 0,5 | 12,6 | 2,0 |
| Տաջիկական ՍՍՌ | 11,5 | 1,0 | 15,0 | 1,5 |
| Կիրգիզական ՍՍՌ | 4,4 | 0,5 | 6,6 | 1,0 |
| Ղազախական ՍՍՌ | 5,3 | 0,6 | 6,5 | 1,0 |
| Վրացական ՍՍՌ | 6,8 | 0,16 | 13,6 | 2,5 |
| Ադրբեջանական ՍՍՌ | 11,4 | 1,4 | 12,6 | 1,8 |
| Հայկական ՍՍՌ | 1,9 | 0,25 | 4,0 | 1,0 |

| Ռեսպուբլիկաների, երկրամասերի և մարզերի անունը | Կոլխոզներում բրնձի ցանքի 1941 1947 թ. թ. պետական պլանը | | | |
|---|---|---|---|---|
| | Թփային, ցածրաբուն և բնային պլանտացիաներ (հազար հեկտար) | | Բարձրաբուն, գծային և այլ ծառեր (միլիոն արմատ) | |
| | Ընդամենը | Այդ թվում 1941 թվակ. | Ընդամենը | Այդ թվում 1941 թվ. |
| 1 | 2 | 3 | 4 | 5 |
| Ուկրաինական ՍՍՌ | 86,0 | 14,7 | 20,0 | 4,13 |
| Մոլդավական ՍՍՌ | 2,2 | 0,15 | 0,8 | 0,065 |
| ՌՍՖՍՌ | 81,27 | 8,1 | 20,6 | 1,535 |
| Այդ թվում | | | | |
| Դաղստանյան ԱՍՍՌ | 2,75 | 0,15 | 0,9 | 0,09 |
| Չեչենո-Ինգուշական ԱՍՍՌ | 2,27 | 0,25 | 0,6 | 0,1 |
| Հյուսիս-Օսեթական ԱՍՍՌ | 0,48 | 0,1 | 0,2 | 0,025 |
| Կաբարդինո-Բալկարական ԱՍՍՌ | 0,9 | 0,5 | 0,5 | 0,1 |

| Ռեսպուբլիկաների, երկրամասերի և մարզերի անունը | Կոլխոզներում թթենի տնկելու 1941-1947 թ. թ. պետական պլանը | | | |
|---|---|---|---|---|
| | Թփային, ցածրաբուն և բնային պլանտացիաներ (հազար հեկտար) | | Բարձրաբուն, գծային և այլ ծառեր (միլիոն արմատ) | |
| | Ընդամենը | Այդ թվում՝ 1941 թվակ. | Ընդամենը | Այդ թվում 1941 թվակ. |
| 1 | 2 | 3 | 4 | 5 |
| *Օրջոնիկիձեի երկրամաս* | 12,0 | 2,0 | 3,0 | 0,5 |
| *Կրասնոդարի երկրամաս* | 14,4 | 0,5 | 3,6 | 0,26 |
| *Ռոստովի մարզ* | 9,5 | 0,7 | 2,0 | 0,13 |
| *Ղրիմի ԱՍՍՌ* | 3,0 | 0,5 | 1,2 | 0,13 |
| *Պովոլժիեի գերմանացիների ԱՍՍՌ* | 1,87 | 0,3 | 0,4 | — |
| *Ստալինգրադի մարզ* | 7,7 | 0,7 | 1,6 | — |
| *Վորոնեժի մարզ* | 14,4 | 1,3 | 3,6 | 0,15 |
| *Կուրսկի մարզ* | 12,0 | 1,1 | 3,0 | — |

2. *Ուզբեկական, Թուրքմենական, Տաջիկական, Կիրգիզական, Ղազախական, Վրացական, Ադրբեջանական և Հայկական ՍՍՌ-ների կոլխոզներում մտցնել թթենու նոր տնկումների պարտադիր պետական նորմաներ. տնկումները պետք է կատարվեն 1941—1947 թվականների ընթացքում հետևյալ չափով.*

| Ռեսպուբլիկաների անունը | 1941—1947 թ. թ. ժամանակաշրջանում կոլխոզի համար պարտադիր կարգով թթենի տնկելու միջին նորման | |
|---|---|---|
| | Թփային, ցածրաբուն և բնային պլանտացիաներ (հեկտարով) | Բարձրաբուն, գծային և այլ ծառեր (հազար արմատ) |
| *Ուզբեկական ՍՍՌ* | 7,0 | 10,0 |
| *Թուրքմենական ՍՍՌ* | 5,0 | 9,0 |
| *Տաջիկական ՍՍՌ* | 4,0 | 5,0 |

| | | |
|---|---|---|
| Կիրգիզական ՍՍՌ (Օշի, Ջալալ-Աբադի և Ֆրունզեի մարզերը) | 4,5 | 6,0 |
| Ղազախական ՍՍՌ (Հարավային-Ղազախական, Ջամբուլի և Կզըլ-Օրդայի մարզերը) | 4,5 | 5,0 |
| Վրացական ՍՍՌ | 2,0 | 4,0 |
| Ադրբեջանական ՍՍՌ | 5,0 | 4,5 |
| Հայկական ՍՍՌ | 3,0 | 5,0 |



3. Միութենական ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին թույլատրելու թյամբ, պարտադիր կարգով թթենու անկելուց ազատել բարձր լեռնային շրջանների կոլխոզները, ինչպես նաև ոռոգելի հող չունեցող առանձին կոլխոզները:

4. Սահմանել, որ 1941—1947 թվականներին Ուկրաինական և Մոլդավական ՍՍՌ-ներում, Դաղստանյան, Չեչենո-Ինգուշական, Հյուսիս-Օսեթական, Կաբարդինո-Բալկարական, Ղրիմի ու Պովոլժյեի գերմանացիների ԱՍՍՌ-ներում, Օրջոնիկիձեի ու Կրասնոդարի երկրամասերում, Ռոստովի, Ստալինգրադի, Կույբիշևի և Վորոնեժի մարզերում թթենու պարտադիր տնկումներ են կատարվում շերամապահության զարգացման շրջաններում, կոլխոզի համար պարտադիր տնկումների հետևյալ նորմաներով՝

| Ռեսպուբլիկաների, երկրամասերի ու մարզերի անունը | 1941—1947 թ. թ. ժամանակաշրջանում կոլխոզի համար թթենու պարտադիր տնկումների միջին նորման | |
|---|---|---|
| | Թփային, ցածրաբուն պլանտացիաներ (հեկտարով) | Բարձրաբուն, գծային և այլ տեսակի ծառեր (հազար արմատ) |
| Ուկրաինական ՍՍՌ | 10,0 | 2,0 |
| Մոլդավական ՍՍՌ | 6,0 | 2,0 |
| Դաղստանյան ԱՍՍՌ | 5,0 | 1,5 |
| Չեչենո Ինգուշական ԱՍՍՌ | 8,0 | 2,0 |
| Հյուսիս-Օսեթական ԱՍՍՌ | 9,0 | 3,0 |
| Կրասնոդարի երկրամաս | 12,0 | 3,0 |
| Կաբարդինո-Բալկարական ԱՍՍՌ | 10,0 | 4,0 |
| Ղրիմի ԱՍՍՌ | 6,0 | 2,0 |
| Պովոլժյեի գերմանացիների ԱՍՍՌ | 10,0 | 2,0 |
| Օրջոնիկիձեի երկրամաս | 12,0 | 3,0 |
| Ռոստովի մարզ | 10,0 | 2,0 |
| Ստալինգրադի մարզ | 10,0 | 2,0 |
| Կուրսկի մարզ | 8,0 | 2,0 |
| Վորոնեժի մարզ | 8,0 | 2,0 |



5. Կոլխոզներում թթենու պարտադիր տնկումներ պետք է կատարվեն սկսած 1941 թվականից, ըստ տարիների համաչափորեն, սակայն այն հաշվով, որ տնկիններով ապահովված լինելու դեպքում, կոլխոզները հնարավորություն ունենան ժամկետից շուտ կատարելու թթենու տնկումների այն պլանը, որը սահմանված է 1941—1947 թվականների համար։

6. Կոլխոզներին թույլ տալ բարձրարժեք թթենի տնկելու պարտադիր պլանների հաշվին կատարել պլանտացիաների տնկումներ (թփային, ցածրաբուն և բնային)՝ հաշված մեկ հեկտար պլանտացիան ու համարած մասսիվով տնկված հազար բարձրաբուն, գծային և այլ տունկի փոխարեն։

Այն կոլխոզների համար, որոնք 1938—1940 թվականների ժամանակաշրջանում կատարել են թթենու թփային, ցածրաբուն և բնային պլանտացիաների տնկում և ապահովել են դրանց լիակատար պահպանումն ու պատշաճ խնամքը, կատարված տնկումները մտցնել պարտադիր կարգով թթենու պլանտացիա տնկելու այն նորմա-

ների մեջ, որոնք սահմանված են նրանց համար:

7. Թույլատրել միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին և երկրային ու մարզային գործկոմներին՝ դիֆերենցիացիայի ենթարկել թթենու պարտադիր տնկումների նորմաներն ըստ մարզերի ու շրջանների, հաշվի առնելով հողային տարածությունները ու գյուղատնտեսության ուղղությունը, անպայման պահպանելով միջին-ռեսպուբլիկական նորմաները:

8. Պարտավորեցնել միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, երկրային ու մարզային գործկոմներին, ՀամԿ(բ)Պ երկրկոմներին ու մարզկոմներին՝

ա) 1941—1947 թվականներին թթենի տնկելու պետական պլանը և թթենի տնկելու պարտադիր նորմաները մի ամսվա մեջ հասցնել յուրաքանչյուր կոլխոզին.

բ) սահմանել անտառապաշտպան շերտե-



րի համար և քաղաքները, ավանները, սովխոզները, ճանապարհներն ու մագիստրալ ջրանցքները կանաչապատելու համար թթենի տնկելու 1941—1942 թվականների պլանները:

9. Առաջարկել կոլխոզնիկներին, ինչպես նաև գյուղական վայրերում ապրող բանվորներին ու ծառայողներին՝ թթենու տընկումներ կատարել տնամերձ հողամասերում:

10. Սահմանել պետական ու կոլխոզային տնկարաններում և սովխոզներում 1941—1942 թվականներին սերմարույսեր և տնկիներ աճեցնելու հետևյալ պլանն ըստ ռեսպուբլիկաների, երկրամասերի ու մարզերի.

| Ռեսպուբլիկաների, երկրամասերի ու մարզերի անունը | 1941 թվական | | 1942 թվական | |
|---|---|---|---|---|
| | Թխենու սերմի ցանքը հեկտարով | Տնկիների տնկումը հեկտարով | Թխենու սերմի ցանքը հեկտարով | Տնկիների տնկումը հեկտարով |
| Ուզբեկական ՍՍՌ | 220 | 800 | 220 | 800 |
| Թուրքմենական ՍՍՌ | 40 | 198 | 40 | 120 |
| Տաջիկական ՍՍՌ | 25 | 120 | 70 | 160 |
| Կիրգիզական ՍՍՌ | 25 | 112 | 30 | 60 |
| Ղազախական ՍՍՌ | 20 | 60 | 45 | 70 |
| Վրացական ՍՍՌ | 25 | 225 | 70 | 226 |
| Ադրբեջանական ՍՍՌ | 30 | 80 | 45 | 140 |
| Հայկական ՍՍՌ | 12 | 45 | 15 | 30 |
| Ուկրաինական ՍՍՌ | 400 | 246 | 750 | 350 |
| Մոլդավական ՍՍՌ | 2 | 5 | 16 | 5 |
| ՌՍՖՍՌ | 334 | 138 | 671 | 176 |
| Այդ թվում՝ | | | | |

| Ռեսպուբլիկաների, երկրամասերի ու մարզերի անունը | 1941 թվական | | 1942 թվական | |
|---|---|---|---|---|
| | Թխենու սերմի ցանքը հեկտարով | Տնկիների տնկումը հեկտարով | Թխենու սերմի ցանքը հեկտարով | Տնկիների տնկումը հեկտարով |
| Դաղստանի ԱՍՍՌ | 15 | 6 | 30 | 6 |
| Չեչենո-Ինգուշական ԱՍՍՌ | 20 | 6 | 22 | 6 |
| Հյուսիս-Օսեթական ԱՍՍՌ | 3 | 6 | 3 | 6 |
| Կաբարդինո-Բալկարական ԱՍՍՌ | 10 | 6 | 10 | 6 |
| Օրջոնիկիձեի երկրամաս | 59 | 30 | 85 | 20 |
| Կրասնոդարի երկրամաս | 45 | 20 | 125 | 25 |
| Ռոստովի մարզ | 51 | 17 | 90 | 20 |
| Ղրիմի ԱՍՍՌ | 22 | 12 | 25 | 12 |
| Պովոլժիեի գերմանացիների ԱՍՍՌ | 16 | 7 | 16 | 10 |
| Ստալինգրադի մարզ | 37 | 6 | 75 | 10 |
| Վորոնեժի մարզ | 28 | 11 | 100 | 25 |
| Կուրսկի մարզ | 28 | 11 | 90 | 20 |
| Ընդամենը ՍՍՌՄ-ում | 1.133 | 2.029 | 1.972 | 2.136 |

11. Պարտավորեցնել ՍՍՌՄ Հողժողկոմատին, ռեսպուբլիկաների ժողկոմավետներին, միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, մարզային (երկրային) գործկոմներին, Համկ(բ)Պ երկրկոմներին և մարզկոմներին՝

ա) ընդարձակել պետական ու կոլխոզային տնկարանների ցանցը, համապատասխան դարձնելով դրանց քանակն ու տարածությունը տնկեններ աճեցնելու պլանի հետ.

բ) ապահովել թթենու տունկեր ունեցող կոլխոզների կողմից ճիշտ ձևավորելու, բներն ու սյաակը մաքրելու, մոլախոտերը ոչնչացնելու, պարարտացնելու, պլանտացիաները նորոգելու և թթենու բազմաբերք սորտերի մասսայական պատվաստումներ կատարելու աշխատանքների անցկացումը.

գ) ապահովել թթենու տերևի բերքի ավելացումը և թթենու հիվանդությունների ու վնասատուների տարածման բների ոչնչացումը. այդ նպատակով 1941 թվականին կատարել պարտադիր կարգով թթաստանների հողի բարձրորակ խոր մշակումը, անկախ թթենիների հասակից և հետագայում մշակում կատարել ամեն տարի



առնվազն երկու անգամ, պահպանելով հողը փխրուն վիճակում և մաքուր մոլախոտերի.

դ) այն վայրերում, որտեղ չի կարելի տրակտորային կամ ձիաքարշ մեքենաներով փխրացում կատարել, փորումը կատարել ձեռքով, առեղծելով յուրաքանչյուր թթենու շուրջ փխրացված բնամերձ շրջաններ.

ե) թթենու թփային պլանտացիաներում և տնկարաններում մեքենայացնել հիմնական աշխատանքները (պլանտաժային հերկը և աշնանավար, պլանտացիաների շարամեջ մշակում, տնկիների փորում և այլն).

զ) կոլխոզների պլանտացիաների ու տնկարանների մեքենայացված մշակման հետ կապված բոլոր աշխատանքները հանձնարարել ՄՏԿ-ներին.

է) 1941 թվականի պլանի մեջ մտցնել թթարուծության և շերամապահության կոլխոզային մասսայական կադրերի պատրաստումն ու վերապատրաստումը.

ը) 1941 թվականից «Ազրոլեսսեմ»-ի միջոցով ապահովել տեղական պայմաններում աճեցված թթասերմի ամբողջ պահանջված քանակի մթերումը.

թ) կազմակերպել թթենու տեղական

ոլաների լավագույն տունկերի ընտրությունը, ամրացնելով դրանք որպես մայր սերմատուներ։

12. Պարտավորեցնել Ուզբեկական, Թուրքմենական, Տաջիկական, Կիրգիզական, Ղազախական, Հայկական և Ադրբեջանական ՍՍՌ-ների շրջանային գործկոմներին՝ ապահովել թթենու ստուգումը ժամանակին, նախատեսելով նաև թթենու բոլոր տունկերի պարտադիր ստուգումը բերքը հավաքելուց հետո 10 օրվա ընթացքում։

13. Արգելել թթենու տունկերի բոլոր տեսակների կտրելն ու արմատահանելը, առանց ռեսպուբլիկաների ժողկոմսովետների թույլտվության։ Թթենի կտրելու, արմատահանելու, անասուններ արածացնելով փչացնելու և չորացնելու համար (ստուգվող շրջաններում) մեղավորները քրեական պատասխանատվության են կանչվում։ Ռեսպուբլիկաների ժողկոմսովետների թույլտվությամբ կտրված կամ արմատահանված յուրաքանչյուր ծառի փոխարեն նույն թմլականին պետք է տնկվի առնվազն 10 հատ մատղաշ բարձրաբուն թթենի։

14. Թթարուծության բնագավառում կոլ-



խոզների համար սահմանել հետևյալ մրցանակները՝

ա) այն կոլխոզները, որոնք կատարել են թթենի տնկելու պլանը և որոնց ամբողջ տարածության վրա թթենիները բռնել են (կպել են) առնվազն 90 տոկոսով, ստանում են ամսական 200 ռուբլի յուրաքանչյուր հեկտարի համար. տնկված յուրաքանչյուր 500 բարձրաբուն թթենու համար, որոնց առնվազն 90 տոկոսը անվնաս է պահպանվել՝ 100 ռուբլի.

բ) թթենու պլանտացիայի մեկ հեկտարը բազմաբերք սորտով փոխարինելու համար՝ 250 ռուբլի.

գ) մեկ հեկտար ցանքից սերմնաբույս աճեցնելու պլանը գերակատարելու յուրաքանչյուր 20 տոկոսի համար՝ 150 ռուբլի.

դ) մեկ հեկտարից ստանդարտային տընկենի ստանալու պլանի գերակատարման յուրաքանչյուր 10 տոկոսի համար՝ 200 ռուբլի չպատվաստված տնկիների համար և 500 ռուբլի՝ պատվաստված տնկիների համար.

ե) թթենու տնկիներ աճեցնելու պլանի գերակատարման համար օղակի կոլխոզնիկներին տալ դրամական լրացուցիչ վարձատրություն 30 տոկոսի չափով, իսկ սոր-

տայլին թթենի աճեցնելու դեպքում՝ 50 առկոսի չափով այն գումարից, որը ստանում են կոլխոզները պլանով սահմանված տնկիների քանակից դուրս տնկիներ վաճառելուց:

Սահմանել, որ թթարուծության համար կոլխոզների ստացած բոլոր մրցանակները բաշխվում են բրիգադաների և օղակների անդամների միջև՝ թթարուծության աշխատանքների համար նրանց ստացած աշխօրերի համաձայն. կոլխոզի նախագահը ստանում է բրիգադայի անդամի մրցանակի միջին չափով:

15. Թթարուծության համար մրցանակները վճարում է ՍՍՌՄ Հողժողկոմատը միութենական բյուջեի հատկացումներից:

16. Պարտավորեցնել ՍՍՌՄ պետպլանի ժողտնտհաշվառման կենտրոնական վարչությանը՝ 1941 թվականին կատարել թթաստանների համատարած հաշվառում:

## II. ՇԵՐԱՄԱՈՐԴԻ ՆԵՐԱԿՐՈՒՄԸ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼՈՒ ՄԱՍԻՆ

17. Հանրային շերամաբուծության ձևերի մեջ գոյություն ունեցող խայտաբղետությունը վերացնելու նպատակով, հանձնարարել կոլխոզներին.



ա) մշտական շերամապահական բրիգադաներ (օղակներ) ստեղծել առավել որակյալ աշխատողներից այնպիսի քանակությամբ, որն անհրաժեշտ է թթարուծական և շերամապահական աշխատանքները կատարելու համար, այն հաշվով, որ այդ բրիգադաները (օղակները) շերամաորդի աճեցման ժամանակաշրջանում (գլխավորապես թրթուրների վերջին հասակում) համալրվեն անհրաժեշտ քանակությամբ կոլխոզնիկներով՝ այլ բրիգադաներից.

բ) շերամաորդի կերակրմամբ (ներառյալ նաև կերի հայթայթումը) զբաղվող կոլխոզնիկների աշխատանքի վարձատրությունը կատարել աշխօրերի հաշվարկումով, նայած ստացված բոժոժի բերքի քանակին ու որակին: Թթարուծության, ինչպես նաև այն բոլոր մյուս աշխատանքների գծով, որոնք կապված չեն անմիջականորեն շերամաորդի աճեցման հետ, աշխօրեր հաշվարկել ընդհանուր հիմունքներով.

գ) շերամաբուծական բրիգադաների և օղակների կոլխոզնիկներին բերքատվության պլանից ավելի ստացված յուրաքանչյուր կիլոգրամ բոժոժի համար տալ լրացուցիչ դրամական վարձատրություն՝ կոլխոզում

մեկ կիլոգրամ բոժոժի միջին արժեքի
(մթերակայանի վճարած) 75 տոկոսի չա-
փով, ներառյալ հիմնական վարձատրու-
թյունը և մրցանակ-հավելումները, որ
կոլխոզն ստանում է կոնտրակտացիայի
պլանի գերակատարման համար։
դ) շերամաբուծությամբ զբաղվող կոլ-
խոզների արտադրական պլանների մեջ
մտցնել շերամաբուծության և թթաբու-
ծության աշխատանքները։
18. Հանրային շերամաբուծությունը
լայնորեն զարգացնելուն զուգընթաց, այն
շերամաբույծ կոլխոզնիկներին, որոնք կըն-
քում են բոժոժի կոնտրակտացիայի պայ-
մանագրեր, անհրաժեշտ օգնություն ցույց
տալ իրենց շերամաորդերը հաջողությամբ
աճեցնելու գործում— շերամաբույծ կոլ-
խոզնիկներին ազատել կոլխոզում կատար-
վող աշխատանքներից 4—5 հասակների
շրջանում թրթուրների աճեցման համար,
պայմանով, որ այդ կոլխոզնիկներն աճեց-
նեն առնվազն 0,5 տուփ գրենա, տրանս-
պորտ տրամադրել կերի փոխադրման և
բոժոժի հանձնման համար, վարձատրու-
թյամբ նրանց տրամադրել կոլխոզներում
պահվող շերամաորդերի համար ավելորդ



թթենու տերևի ամբողջ մնացորդը։
19. Տրեստի երբ կազմակերպությունները թույլատրել շե-
րամաորդի կերակրման ժամանակամիջո-
ցում հանրային շերամաբուծության կա-
րիքների համար օգտագործելու նպատակով
առանց վարձատրության կոլխոզներին
ամրացնել այն կերի ֆոնդերը, որոնք գըտ-
նըվում են սովխոզների, պետական ու հա-
սարակական կազմակերպությունների հո-
ղամասերում և երկաթուղիների օտարաց-
ման գոտիներում։
20. Հանձնարարել շերամաբուծությամբ
զբաղվող կոլխոզներին, յուրաքանչյուր
կոլխոզում կառուցելու առնվազն 1—2 շե-
րամաբուծարան։
Պարտավորեցնել տեղական պարտիական
ու սովետական կազմակերպություններին՝
ամեն կերպ օգնություն ցույց տալ կոլ-
խոզներին հանրային շերամաբուծությունը
կազմակերպելու և շերամաբուծարանների
կահավորման ու կառուցման համար նրանց
տեղական շինանյութեր մատակարարելու
գործում։
21. Կոլխոզներում 400 տաքացված տխլի
և 2 հազար պարզ տխլի շերամաբուծա-
րաններ կառուցելու համար ՍՍՌՄ ժող-

կոմսոմոլին կից Տնտխորհրդի ռեզերվից 1941 թվականին առանձնացնել 10 հազար խորանարդ. մետր գերան ու 3 հազար խորանարդ. մետր տախտակ և 30 տոննա մեխ, դրանք կոլխոզներին մատակարարելով 1941 թվականի երկրորդ ու երրորդ եռամսյակների ընթացքում:

Պարտավորեցնել ՍՍՌՄ Առևտրի ժողկոմատին և Ցենտրոսոյուզին՝ կոլխոզներին վաճառելու համար շերամաբուծական շրջանները փոխադրել հիշյալ շինանյութերը, հատկապես շերամաբուծարանների կառուցման նպատակով:

22. Պարտավորեցնել Գյուղատնտեսական բանկին՝ 1941 թվականին շերամաբուծարանների կառուցման համար կոլխոզներին բաց թողնել 9,0 միլիոն ռուբլի, և շերամորդի աճեցման դարակներ ձեռք բերելու համար՝ 5,5 միլիոն ռուբլի երկարատև վարկ, նաև ըստ գոյություն ունեցող նորմաների երկարատև վարկավորմամբ ապահովել թթենու ցանքերն ու տնկարանները:



23. Թթակեր շերամորդի հում (կենդանի) բոժոժի մթերման միջին գինը սահմանել 10 ռուբլի 70 կոպ. և կաղնակեր շերամորդինը՝ 18 ռուբլի յուրաքանչյուր կիլոգրամի համար, պարտավորեցնելով Տեքստիլ արդյունաբերության ժողկոմատին և ՍՍՌՄ Հողժողկոմատին՝ այդ գնի սահմաններում որոշել տոհմային ու արդյունաբերական, գարնանային ու երկրորդ սաճի բոժոժի գինը, և ըստ խմբերի:

24. Սահմանել, որ այն կոլխոզներին, կոլխոզնիկներին և անհատական տնտեսություններին, որոնք գերակատարել են թթակեր շերամորդի բոժոժի կոնտրակտացիայի պլանը, պլանից ավելի հանձնված բոժոժի յուրաքանչյուր կիլոգրամի համար վճարվում է մրցանակ-հավելում, մթերման գնի հետևյալ չափով:

| Ա. Գարնանային շերամորդի բոժոժի համար<br>Կոնտրակտացիայի պլանը՝ մեկ տուփ գրենայից | Հանրային շերամաբուծությամբ զբաղվող կոլխոզներին | Անհատապես շերամորդներ պահող կոլխոզնիկներին |
|---|---|---|
| 25-ից—35 կիլոգրամ | 45 % | 20 % |
| 36-ից—40 » | 60 % | 20 % |
| 41-ից—45 » | 100 % | 60 % |
| 46-ից—50 » | 175 % | 100 % |
| 51-ից—55 » | 250 % | 175 % |
| 56-ից բարձր | 300 % | 225 % |

| Բ. Երկրորդ նիրակրման շերամաորդի բոժոժի համար<br>Կոնտրակտացիայի պլանը՝ մեկ տուփ գրենայից | Հանրային շերամաբուծությամբ զբաղվող կոլխոզներին | Անհատապես շերամորդներ պահող կոլխոզնիկներին |
|---|---|---|
| 20-ից—25 կիլոգրամ | 40 % | 20 % |
| 26-ից—30 » | 60 % | 40 % |
| 31-ից—35 » | 100 % | 60 % |
| 36-ից—40 » | 175 % | 100 % |
| 41-ից—45 » | 250 % | 175 % |
| 46-ից բարձր | 300 % | 225 % |



*Սահմանել, որ տեխնիկական պայմանների տեսակետից դեֆեկտավոր ճանաչված և «կարա-պաճախ» բոժոժի համար մրցանակ-հավելում չի վճարվում:*

*Պլանից ավելի հանձնված բոժոժի համար անհատական տնտեսություններին մրցանակ-հավելումներ վճարվում են կոլխոզնիկների համար սահմանված նորմաների կեսով չափ:*

25. *Թթակեր և կաղնակեր շերամաորդի բոժոժ հանձնող կոլխոզներին, կոլխոզնիկներին ու այլ հանձնողներին* 1941 *թվականին սպառկոոպերացիայի միջոցով մետաքսյա ու բամբակեղեն գործվածքների վաճառքը սահմանել նրանց կողմից հանձնված բոժոժի արժեքի հետևյալ չափերով.*

*ա) կոլխոզներին, հանրային շերամաբուծության դեպքում —* 45 *տոկոսի գումարով.*

*բ) կոլխոզնիկներին և այլ բոժոժ հանձնողներին՝* 30 *տոկոսի գումարով:*

26. *Պարտավորեցնել Ուկրաինական ՍՍՌ Ժողկոմսովետին և Ուկր. Կ(բ)Պ Կենտկոմին, Բաշկիրական, Թաթարական, Չուվաշական, Կաբարդինո-Բալկարական, Դաղըստանի, Չեչենո-Ինգուշական, Ղրիմի ԱՍՍՌ*

ժողկոմսովետներին և ՀամԿ(բ)Պ մարզկոմներին, Վորոնեժի, Կուրսկի, Կույբիշևի, Սարատովի, Ստալինգրադի, Տամբովի և Ռոստովի մարզերի մարզգործկոմներին և ՀամԿ(բ)Պ մարզկոմներին, Կրասնոդարի, Օրջոնիկիձեի երկրգործկոմներին և ՀամԿ(բ)Պ երկրկոմներին՝ ապահովել կաղնակեր շերամաորդի ամեն կերպ զարգացումը կոլխոզներում:

Թաթարական ԱՍՍՌ Ժողկոմսովետին, Սարատովի և Տամբովի մարզգործկոմներին՝ 1941 թվականին ապահովել կաղնուանտառամասերի ամրացումը կոլխոզներին, կաղնակեր շերամաորդի աճեցման համար:

27. Բոժոժի կոնտրակտացիայի և մթերման տարեկան պլանները կատարած շրջանների համար սահմանել մասհանումներ տեղական բյուջեին, մթերված բոժոժի ընդհանուր արժեքի 2,5 տոկոսի չափով՝ ի հաշիվ բոժոժի մթերման վերադիր ծախսերի, հիշյալ մասհանումները ծախսել շրջգործկոմի հայեցողությամբ:

## III. ՍԵԼԵԿՑԻԱՅԻ, ՏՈՀՄԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԵՎ ԳՐԵՆԱԺԻ ՄԱՍԻՆ

28. Շերամաորդի նոր ցեղերի աճեցման և գոյություն ունեցող ցեղերի բարելավ-



ման ուղղությամբ սելեկցիոն աշխատանքներ կատարելու պարտականությունը դնել շերամաբուծության Միջին-ասիական ու Թբիլիսիի ինստիտուտների, և շերամաբուծական զոնալ կայանների վրա, պարտավորեցնելով նրանց ամենամոտիկ տարիների ընթացքում բուծման համար աճեցնել նոր ցեղեր և բարձր մթերատու շերամաորդի հիբրիդային զուգակցումներ:

Շերամաբուծության գիտա-հետազոտական ինստիտուտներն ու կայանները ՍՍՌՄ Հողժողկոմատի սիստեմից հանձնել ՍՍՌՄ Տեքստիլ արդյունաբերության ժողկոմատին, առ 1-ն հունվարի 1941 թվականի բալանսով ու բոլոր կադրերով:

29. Շերամաորդի նոր, բարձր-մթերատու ցեղերի և թթենու բարձր-բերքատու սորտերի աճեցման աշխատանքները խրախուսելու նպատակով, հեղինակների համար սահմանել պրեմիաներ— շերամաորդի բարձր մթերատու մոնովոլտինային ցեղի աճեցման համար, որը բազմացված է առնվազն մինչև 2 հազար տուփ գրենա—10 հազար ռուբլի. բարձր մթերատու բիվոլտինային շերամաորդի համար, որը բազմացված է առնվազն մինչև 2 հազար տուփ

գրենա—5 հազար ռուբլի, թթենու բարձրբերքատու սորտի աճեցման համար, որը բազմացված լինի առնվազն 500 հեկտար տարածության վրա—10 հազար ռուբլի, սելեկցիոն աշխատանքի համար նախահաշիվներում նախատեսված միջոցների հաշվին:

30. 1941 թվականի հունվարի 1-ից սկսած, ՍՍՌՄ Ժողկոմսովետի և Համ. Կ(բ)Պ Կենտկոմի 1940 թվականի հունվարի 29-ի № 154 որոշումը տարածել շերամաբուծության ինստիտուտների, կայանների և հենակետերի գլխավոր ու գիտա-տեխնիկական աշխատողների վրա, աշխատավարձի տեսակետից նրանց հավասարեցնելով սելեկցիոն փորձագիտական հաստատությունների աշխատողների հետ:

31. Հանձնարարել միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին՝ յուրաքանչյուր գրեն-գործարանի համար հաստատել տոհմաբուծական շրջաններ, այն հաշվով, որ տոհմային շերամաորդերն ապահովված լինեն աճեցման անհրաժեշտ տարածությամբ, կերի ֆոնդով և որակյալ սպասարկմամբ:

32. Արգելել տնային եղանակով գրենա



պատրաստելը (և նրանից շերամաորդեր աճեցնելը), որը շերամաորդի հիվանդությունների տարածման աղբյուր է հանդիսանում:

Տնային եղանակով գրենա պատրաստող և նրանից շերամաորդեր աճեցնող անձանց ենթարկել քրեական պատասխանատվության, իսկ հայտաբերված շերամաորդերն ու գրենան ոչնչացնել:

33. ՍՍՌՄ Տեքստիլ արդյունաբերության ժողկոմատի վրա դնել թթակեր ու կաղնակեր շերամաորդի բոժոժի կոնտրակտացիան ու մթերումը, գրենայի (թրթուրների) արտադրությունն ու ռեալիզացիան, բոժոժի նախնական մշակումը, շերամաորդի աճեցման հրահանգումը, վերահսկողությունը կոնտրակտացիոն պայմանագրերի կատարման նկատմամբ և կոլխոզներին ու կոլխոզնիկներին շերամաորդի կերակրման համար անհրաժեշտ նյութեր մատակարարելը:

ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմի-

սարների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն կարևորագույն նշանակություն են տալիս շերամաբուծության հետագա զարգացմանը և պահանջում են ՍՍՌՄ Տեքստիլ արդյունաբերության ժողկոմատից, ՍՍՌՄ Հողժողկոմատից, տեղական սովետական ու պարտիական կազմակերպություններից՝ շերամաբուծությունը դուրս բերել ՍՍՌՄ գյուղատնտեսության առաջավոր ճյուղերի շարքը:

---



## „ՇԵՐԱՄԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ"

### ՍՍՌՄ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ 1941 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 13-Ի ՈՐՈՇՈՒՄԸ ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ 1941 Թ. ՄԱՐՏԻ 19-Ի ՈՐՈՇՈՒՄԸ*

«Շերամապահության հետագա զարգացման ձեռնարկումների մասին» ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1941 թվականի մարտի 13-ի որոշմանը համապատասխան, Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը որոշում են.

1. Սահմանել Հայկական ՍՍՌ կոլխոզներում թթենու պարտադիր տնկման 1941—47 թ. թ. հետևյալ պետական պլանը.

| ՇՐՋԱՆՆԵՐ | Թփային ցածրարուն և բռային պլանտացիաներ (հեկտարներով) | | Բարձրարուն, գծային և այլ ծառեր (հազար արմատներով) | |
|---|---|---|---|---|
| | Ընդամենը | Այդ թվում՝ 1941 թ. | Ընդամենը | Այդ թվում՝ 1941 թ. |
| Դուզքենդի | 24 | 10 | 50 | — |
| Աղինի | 12 | 10 | 25 | — |
| Սպիտակի | 30 | — | 50 | — |
| Կիրովականի | 42 | 10 | 75 | 5 |
| Ալավերդու | 76 | 5 | 150 | 25 |
| Արթիկի | 15 | — | 25 | — |
| Ստեփանավանի | 28 | 10 | 50 | 5 |
| Նոյեմբերյանի | 55 | 5 | 112 | 55 |
| Շամշադինի | 66 | 5 | 112 | 60 |
| Իջևանի | 50 | 5 | 105 | 30 |
| Դիլիջանի | 21 | 10 | 40 | — |



| ՇՐՋԱՆՆԵՐ | Թփային ցածրարուն և բռային պլանտացիաներ (հեկտարներով) | | Բարձրարուն, գծային և այլ ծառեր (հազար արմատներով) | |
|---|---|---|---|---|
| | Ընդամենը | Այդ թվում՝ 1941 թ. | Ընդամենը | Այդ թվում՝ 1941 թ. |
| Ղափանի | 165 | 10 | 355 | 100 |
| Գորիսի | 60 | 15 | 150 | 100 |
| Սիսիանի | 20 | 15 | 50 | 40 |
| Ազիզբեկովի | 45 | 10 | 100 | 5 |
| Միկոյանի | 112 | 5 | 225 | 5 |
| Կարաբաղլարի | 54 | 15 | 112 | 10 |
| Ախտայի | 30 | 10 | 60 | — |
| Ն. Բայազետի | 15 | — | 25 | — |
| Մարտունու | 18 | 15 | 40 | — |
| Բասարգեչարի | 65 | 25 | 125 | — |
| Կրասնոսելսկի | 15 | — | 25 | — |

| ՇՐՋԱՆՆԵՐ | Թփային ցածրաբուն և բնային պլանտացիաներ (հեկտարներով) | | Բարձրաբուն, գծային և այլ ծառեր (հազար արմատներով) | |
|---|---|---|---|---|
| | Ընդամենը | Այդ թվում՝ 1941 թ. | Ընդամենը | Այդ թվում՝ 1941 թ. |
| Վաղարշապատի | 143 | 20 | 285 | 70 |
| Հոկտեմբերյանի | 118 | 10 | 240 | 50 |
| Աշտարակի | 100 | 20 | 225 | 70 |
| Կոտայքի | 113 | 5 | 225 | 30 |
| Թալինի | 42 | — | 70 | — |
| Ջանգիբասարի | 104 | 20 | 234 | 55 |
| Վեդու | 39 | 20 | 120 | 80 |
| Ղամարլուի | 127 | 30 | 285 | 80 |
| Բերիայի անվան | 52 | 25 | 135 | 60 |
| Մեղրու | 44 | 10 | 120 | 65 |
| Ընդամենը՝ | 1900 | 350 | 4.000 | 1.000 |



2. Հայկական ՍՍՌ-ում 1941—1947 թ.թ. ժամանակաշրջանի համար սահմանել թթենու տնկման միջին նորմա.

ա) Ալավերդու, Նոյեմբերյանի, Շամշադինի, Իջևանի, Ղափանի, Գորիսի, Միկոյանի, Կարաբաղլարի, Վաղարշապատի, Հոկտեմբերյանի, Աշտարակի, Կոտայքի, Ջանգիբասարի, Վեդու, Ղամարլուի, Բերիայի անվան և Մեղրու շրջանների կոլխոզներում՝ թփային ցածրաբուն ու բնային պլանտացիաներ 4 հեկտար և բարձրաբուն գծային և այլ ծառեր— 7,5 հազար արմատ.

բ) Դուզքենդի, Աղինի, Արթիկի, Սպիտակի, Ստեփանավանի, Դիլիջանի, Սիսիանի, Ազիզբեկովի, Ախտայի, Ն. Բայազետի, Մարտունու, Բասարգեչարի, Կրասնոսելսկի և Թալինի շրջանների կոլխոզներում՝ թփային ցածրաբուն ու բնային պլանտացիաներ— 3 հեկտար, իսկ բարձրաբուն գծային և այլ ծառեր— 5 հազար արմատ։

3. Թթենու պարտադիր տնկման պետական պլանից ազատել Ամասիայի, Ղուկասյանի, Կալինինոյի, Ալագյազի և Ապարանի շրջանների բոլոր կոլխոզները, որոնք հողային-կլիմայական պայմանների և ոռոգման ջրի բացակայության պատճառով չեն կարող զբաղվել թթարուծությամբ։

4. Հանձնարարել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ հնգօրյա ժամկետում Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի քննարկմանը ներկայացնել մնացած շրջանների բարձրլեռնային կոլխոզների, ինչպես նաև ջրովի հողեր չունեցող այն առանձին կոլխոզների ցանկը, որոնք պետք է ազատվեն թթենու պարտադիր տնկումից։

5. Առաջարկել շրջսովետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին և շրջհողբաժինների վարիչներին,— այն կոլխոզների վերաբերմամբ, որոնք 1938—1940 թ. թ. ժամանակաշրջանում տնկել են թթենու թփային, ցածրաբուն ու բնային պլանտացիաներ և ապահովել են նրանց լիակատար պահպանումն ու պատշաճ խնամքը, արդեն տնկված պլանտացիաները հաշվի առնել թթենու պլանտացիաների պարտադիր տնկման ապարիզում նրանց համար սահմանված նորմաների հաշվին։

6. Թույլատրել շրջսովետների գործկոմներին՝ թթենու պարտադիր տնկման նորմաները դիֆերենցիացիայի ենթարկել ըստ շրջանի կոլխոզների, հաշվի առնելով նրանց հողային տարածությունները և գյուղատնտեսության ուղղությունը, անպայման



պահպանելով շրջանային-միջին նորմաները։

7. Առաջարկել ռայսովետների գործկոմներին և պարտիայի շրջկոմներին՝ երկուշաբաթվա ընթացքում կոլխոզներին հասցնել թթենու պարտադիր տնկման դիֆերենցիացիայի ենթարկված նորմաները, ինչպես նաև թթենու տնկման 1941—47 թ. թ. պետական պլանը։

8. Առաջարկել Հայկական ՍՍՌ Սննդարդյունաբերության ժողկոմատին, Խճուղային ճանապարհների վարչությանը, Երևանի ու Լենինականի քաղսովետների գործկոմներին և շրջսովետների գործկոմներին՝ տասնօրյա ժամկետում մշակել թթենու տնկման 1941—1942 թվականի պլանները քաղաքների, ավանների, սովխոզների, ճանապարհների, մագիստրալային ջրանցքների կանաչազարդման համար և ներկայացնելու Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի քննարկմանը։

9. Սահմանել 1941—42 թ. թ. Հայկական ՍՍՌ կոլխոզներում անտառատնկման աշխատանքների հետևյալ պլանը՝

| Թվականներ | Դաշտապաշտպան շերտերի անտառատընկում (հեկտարներով) | Ձորերի անտառապատում |
|---|---|---|
| 1941 թ. | 200 | 130 |
| 1942 թ. | 300 | 150 |

Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ հնգօրյա ժամկետում անտառատնկման աշխատանքների պլանն ուղարկել շրջաններին։

10. Առաջարկել շրջսովետների գործկոմներին և պարտիայի շրջկոմներին՝ անտառատնկման ընդհանուր պլանի 20 տոկոսը տնկել թթենիներ։

11. Առաջարկել «Ագրոլեսսեմ»-ի Հայաստանի գրասենյակին՝ անտառատնկումն ապահովել համապատասխան քանակությամբ թթենու տունկերով։

12. Սահմանել, որ Վաղարշապատի պետական տնկարանում 1941—42 թ. թ. և ամեն տարի պետք է կատարվի երկու հեկտար թթենու ցանք և հիմնվի 10 հեկտար տնկարան։

13. Սահմանել կոլխոզային տնկարաններում թթենու տնկիներ և սերմաբույսեր աճեցնելու 1941—42 թ. թ. պլանը, հետևյալ չափերով.



| ՇՐՋԱՆՆԵՐ | Գյուղերի—կոլխոզների անունը | 1941 թ. Թթենու սերմի ցանքը (հեկտ.) | 1941 թ. Տնկիների տնկումը (հեկտ.) | 1942 թ. Թթենու սերմի ցանքը (հեկտ.) | 1942 թ. Տնկիների տնկումը (հեկտ.) |
|---|---|---|---|---|---|
| Բերիայի անվ. | Նորագավիթ | 4 | 12 | 4 | 12 |
| Ղամարլու | Բեջազլու | 2 | 5 | 2 | 5 |
| Ղամարլու | Ջիգդամլու | 2 | 5 | 2 | 5 |
| Ղամարլու | Դարղալու | — | 4 | — | 4 |
| Իջևան | Ուզունթալա | 2 | 4 | 2 | 4 |
| Ալավերդի | Շնող | 1 | 2 | 1 | 2 |
| Գորիս | Գորիս | 2,5 | 8 | 2,5 | 8 |
| Մարտունի | Գյոզալդարա | 2,5 | 5 | 2,5 | 5 |
| Ընդամենը՝ | | 16 | 45 | 16 | 45 |

14. Առաջարկել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ Վաղարշապատի պետական տնկարանի տարածությունը հասցնել մինչև 40 հեկտարի։

15. Առաջարկել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին, շրջգործկոմներին և պարտիայի շրջկոմներին՝ իրենց հատուկ հսկողության տակ վերցնել կոլխոզային մշտական թթատնկարանները և հիշյալ տնկարաններում բոլոր ագրո-տեխնիկական ձեռնարկումների ժամանակին կիրառումը, նպատակ ունենալով ապահովել ստանդարտ տունկերի ստացումը՝ թթենու ցանքի յուրաքանչյուր հեկտարից— 300 հազար սերմաբույս և տնկանոցի յուրաքանչյուր հեկտարից պատվաստած 20 հազար, չպատվաստած— 30 հազար տունկ։

16. Առաջարկել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին 1941 թվականի ընթացքում կոլխոզնիկներից պատրաստել 230 թթաբույծ և շերամապահ։

17. Առաջարկել «Ագրոլեսսեմ»-ի Հայաստանի գրասենյակին՝ 1942 թվականի ցանքի համար հայթայթել 300 կիլոգրամ թթենու սերմ։

18. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ



Հողժողկոմատին՝ 1941—42 թվականի ընթացքում բոլոր մշտական կոլխոզային թթատնկարաններում առանձնացնել 1-ից մինչև 2 հեկտար հողամաս մայրատունկերի տնկման համար, թթենու լավագույն սորտերի պատվաստաճյուղեր և սերմ ստանալու նպատակով։

19. Հանձնարարել շերամապահությամբ զբաղվող կոլխոզներին՝ 1941—42 թ. թ. ընթացքում յուրաքանչյուր կոլխոզում կառուցել 1—2 շերամանոց։

20. 1941 թվականի համար սահմանել շերամանոցների կառուցման պլանը, թվով 47 օբեկտ, որից՝

Մեղրու շրջանում— 9
Ղափանի շրջանում— 3
Բերիայի անվան շրջանում— 3
Իջևանի շրջանում— 2
Շամշադինի շրջանում— 2
Աշտարակի շրջանում— 3
Ղամարլուի շրջանում— 4
Նոյեմբերյանի շրջանում— 2
Ալավերդու շրջանում— 2
Վաղարշապատի շրջանում— 2
Վեդու շրջանում— 2
Միկոյանի շրջանում— 3

Հոկտեմբերյանի շրջանում— 2
Կոտայքի շրջանում— 2
Գորիսի շրջանում— 4
Երևան քաղաքում— 2

Կարևորագույն նշանակություն տալով ջերմապահության հետագա զարգացմանը, Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և ՀԿ(բ)Պ Կենտկոմը պահանջում են շրջանային սովետական, պարտիական ու հողային օրգաններից՝ լուրջ ուշադրություն նվիրել ջերմապահության զարգացմանը և լրիվին ապահովել սահմանված պլանների կատարումը։

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի Նախագահ՝
Ա. ՓԻՐՈՒԶՅԱՆ

ՀԿ(բ)Պ Կենտկոմի Քարտուղար՝
ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



# ՕՐԵՆՔ
## ԿՈԼԽՈԶՆԵՐԻՑ ԳԱՆՁՎՈՂ ԵԿԱՄՏԱՀԱՐԿԻ ՄԱՍԻՆ

(Հաստատված ՍՍՌՄ առաջին գումարման Գերագույն Սովետի VIII սեսիայում)

### ԳԼՈՒԽ I

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴՐՈՒՅԹՆԵՐ

Հոդված 1.—*Կոլխոզներից գանձվող եկամտահարկ վճարում են.*

*ա) գյուղատնտեսական արտելները, ձկնորսական արտելները և հողի համատեղ մշակման ընկերությունները.*

*բ) խառն արհեստագործական-գյուղատնտեսական արտելները (արհկոլխոզները) և հաշմանդամների կոոպերացիայի այն արտելները, որոնք ունեն գյուղատնտեսական եկամուտներ։*

*Ձկնորսության այն եկամուտները, որոնք ստացվում են որսի արտադրանքը պետական մթերողներին ու կոոպերացիային*

հանձնելուց, խառն արհեստագործական-գյուղատնտեսական այն արտելների (արհկոլխոզների) արդյունաբերական ձեռնարկություններից ստացվող եկամուտները, որոնք մտնում են արհեստագործական կոոպերացիայի միությունների մեջ, ինչպես նաև այն արտելների ձեռնարկություններից ստացվող եկամուտները, որոնք մտնում են հաշմանդամների կոոպերացիայի միությունների մեջ, կոլխոզներից գանձվող եկամտահարկի չեն ենթարկվում, այլ հարկվում են համապատասխան օրենքների հիման վրա։

Հոդված 2.—Հարկը հաշվվում է ըստ նախորդ տարվա եկամուտի, որը որոշվում է կոլխոզների տարեկան հաշվետվություններով, հաշվետվությունները ֆինանսական օրգանների կողմից դոկումենտալ ստուգման ենթարկվելուց հետո։

Կոլխոզի վարչությունը պարտավոր է ամեն տարի, մարտի 1-ից ոչ ուշ, համապատասխան ֆինանսական բաժնին ներկայացնել նախորդ տարվա տարեկան հաշվետվությունը՝ կոլխոզի անդամների ընդհանուր ժողովի կողմից հաստատված, անպայման կոլխոզի վերստուգիչ հանձնաժողովի եզրակացության հետ միասին։



ԳԼՈՒԽ II

## ՀԱՐԿՎՈՂ ԵԿԱՄՈՒՏԸ ՈՐՈՇԵԼԸ

Հոդված 3.—Կոլխոզի հարկվող եկամուտի կազմի մեջ մտնում են հետևյալ դրամական և նատուրալ եկամուտները (բացի այս Օրենքի 4-րդ հոդվածում մատնանշվածներից).

ա) բուսաբուծությունից, անասնաբուծությունից, մեղվաբուծությունից և շերամապահությունից ստացվող եկամուտները.

բ) կոխոզների օժանդակ ձեռնարկությունների արտադրանքի վաճառքից ստացվող եկամուտները։

գ) այլ եկամուտները։

Հոդված 4.—Կոլխոզի հարկվող եկամուտի կազմի մեջ չեն մտնում.

ա) պարտադիր մթերումների կարգով պետությանը մթերքներ հանձնելուց ստացված գումարները.

բ) կոլխոզային ֆերմաների անասունների կերակրման համար ծախսվող ֆուրաժը, այդ թվում նաև անձեռնմխելի ապահովագրական ֆուրաժային ֆոնդը.

գ) ՄՏԿ-ների աշխատանքի վարձատրման համար ծախսված արտադրանքը, ինչպես նաև այն դրամական գումարները, ո-

րոնք վճարվել են ՄՏԿ-ին՝ կատարված աշխատանքների համար.

դ) այն գումարները, որոնք ստացվել են բանող և մթերատու անասունների վաճառքից (կենդանի ու մորթված վիճակում) և փոխանցվել են կապիտալ ներդրումների հաշվին՝ բարելավված ու ցեղային անասուններ գնելու համար, կամ թե հոտի վերականգնման ու ընդարձակման նպատակով, ինչպես նաև այն գումարները, որոնք ստացվել են Կարմիր Բանակի համար ձիեր մատակարարելուց.

ե) կոլխոզի օժանդակ ձեռնարկություններում դրամով և նատուրայով կատարված արտադրական ծախսերը.

զ) ապահովագրական հատուցման այն գումարները, որոնք պետական ապահովագրության օրգաններից ստացվել են փչացած գույքի ու ցանքերի համար:

**Հոդված 5.**— Կոլխոզի նատուրալ եկամուտների արժեքը որոշելիս, ներտնտեսային կարիքների համար օգտագործվող պրոդուկցիան (սերմացու, սերմվարկերի վերադարձում, մասհանումներ սերմացուի անձեռնմխելի ապահովագրական ֆոնդի, պարենային ապահովագրական ֆոնդի, հաշման-



դամների օգնության ֆոնդի, մանկամսուրների ու որբերի պահպանման համար և այլ նատուրալ ֆոնդեր) գնահատվում է պետական մթերման գներով, իսկ կոլխոզնիկների միջև բաշխվող պրոդուկցիան,— պետական գնման գներով:

ԳԼՈՒԽ III

## ՀԱՐԿԻ ՎՃԱՐՄԱՆ ԴՐՈՒՅՔՆԵՐՆ ՈՒ ԺԱՄԿԵՏՆԵՐԸ

**Հոդված 6.**— Հարկը հաշվվում է հետևյալ դրույքներով.

ա) կոնտրակտացիայի ու պետական գնումների կարգով մթերքների վաճառքից ստացված եկամուտներից, ինչպես նաև կոլխոզների ներտնտեսային կարիքների համար օգտագործվող պրոդուկցիայից ըստացված եկամուտներից— հարկվող եկամուտի 4 տոկոսի չափով.

բ) կոլխոզի մնացած եկամուտներից— հարկվող եկամուտի 8 տոկոսի չափով:

**Հոդված 7.**— Հաշվված հարկի գումարը հողի համատեղ օգտագործման ընկերությունների վերաբերմամբ բարձրացվում է 25 տոկոսով:

Մինչև վճարման առաջին ժամկետը Գյուղատնտեսական արտելի կանոնադրությանն

անցած՝ հողի համատեղ օգտագործման ընկերությունների վերաբերմամբ հարկի գումարը չի բարձրացվում:

Հոդված 8.— Կոլխոզները հարկը վճարում են հետևյալ ժամկետներին՝ մինչև մարտի 25-ը—20 տոկոս, մինչև հունիսի 1-ը—10 տոկոս, մինչև հոկտեմբերի 1-ը—30 տոկոս և մինչև դեկտեմբերի 1-ը— 40 տոկոս:

## ԳԼՈՒԽ IV

## ԱՐՏՈՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՀԱՐԿԻ ԳԾՈՎ

Հոդված 9.— Վերաբնակվածների տնտեսություններից կազմված կոլխոզներին, ինչպես նաև այն կոլխոզներին, որոնք իրենց կազմի մեջ ընդունել են վերաբնակվածների, եկամտահարկի գծով արտոնություններ են տրվում ՍՍՌՄ Ժողովրդական Կոմիսարների Սովետի որոշումների հիման վրա:

Հոդված 10.— Տարերային աղետներից տուժած կոլխոզներին, աշխատավորների դեպուտատների շրջանային ու քաղաքային Սովետների գործադիր կոմիտեների որոշումներով, կարող են ընթացիկ տարվա սահմաններում տրվել հարկի վճարման տարկետումներ:



Միութենական ռեսպուբլիկաների (մարզային բաժանում չունեցող) ժողովրդական կոմիսարների սովետները, ավտոնոմ ռեսպուբլիկաների ժողովրդական կոմիսարների սովետները, աշխատավորների դեպուտատների երկրամասային ու մարզային Սովետների գործադիր կոմիտեները կարող են տարերային աղետներից տուժած առանձին կոլխոզներին տալ հարկի վճարման տարկետումներ մինչև մեկ տարի ժամանակով՝ հաշված վճարման վերջին ժամկետից:

Հոդված 11.— Միութենական ռեսպուբլիկաների ժողովրդական կոմիսարների սովետները, ավտոնոմ ռեսպուբլիկաների ժողովրդական կոմիսարների սովետների և աշխատավորների դեպուտատների երկրամասային, մարզային, քաղաքային ու շրջանային Սովետների գործադիր կոմիտեների միջնորդությամբ, կարող են տարերային աղետներից տուժած առանձին կոլխոզներին բոլորովին կամ մասամբ ազատել հարկի վճարումից, նայած կրած վնասի չափերին:

Հոդված 12.— ՍՍՌՄ Ժողովրդական Կոմիսարների Սովետին իրավունք է տրվում կոլխոզներն ազատել եկամտահարկի վճարումից, ինչպես նաև անհրաժեշտ դեպ-

քերում կոլխոզների համար սահմանել հարկային արտոնություններ, ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի զարգացումը խթանելու նպատակով։

ԳԼՈՒԽ V

## ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅՈՒՆ ՀԱՐԿԸ ՉՎՃԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Հոդված 13.— Տարեկան հաշվետվությունը ժամկետին ֆինանսական օրգաններին չներկայացնելու համար, կոլխոզի վարչության նախագահը և կոլխոզի հաշվետարը (հաշվապահը) աշխատավորների դեպուտատների շրջանային ու քաղաքային Սովետների գործադիր կոմիտեի որոշմամբ ենթարկվում են յուրաքանչյուրը մինչև 50 ռուբլի տուգանքի։

Հոդված 14.— Տարեկան հաշվետվության մեջ դիտավորյալ կերպով ոչ-ճիշտ տվյալներ ներկայացնելու համար, որոնք չեն համապատասխանում փաստաթղթերին և հաշվետվության մատյանային գրանցումներին, կոլխոզի վարչության նախագահն ու կոլխոզի հաշվետարը (հաշվապահը) ենթարկվում են քրեական պատասխանատվության։



Հոդված 15.— Եկամտահարկը կոլխոզ-
ները վճարում են առաջնահերթ կարգով
և հարկը սահմանված ժամկետներին չվը-
ճարելու դեպքում հարկի չվճարված գումար-
ները ժողովրդական դատարանի որոշմամբ
դուրս են գրվում կոլխոզների ընթացիկ
հաշիվներից։
Վճարումն ուշացնելու դեպքում գանձվում
է տույժ, ուշացրած յուրաքանչյուր օրվա
համար 0,05 տոկոսի չափով։
Հոդված 16.— Դիմումներ և գանգատներ
տալը չի կասեցնում հարկի գանձումը։
Այն դեպքում, երբ որոշում է կայացվել
հօգուտ կոլխոզի, ոչ-ճիշտ կերպով գանձ-
ված գումարները կոլխոզին են վերադարձ-
վում 10-օրյա ժամկետում։
Հոդված 17.— Այս օրենքը գործողության
մեջ մտցնելով, ուժը կորցրած համարել՝
ա) ՍՍՌՄ Կենտգործկոմի և Ժողկոմսովե-
տի 1936 թ. հուլիսի 20-ի որոշումը՝ «Կոլ-
խոզներից գանձվող գյուղատնտեսական
դրամական հարկը դրամական եկամտա-
հարկով փոխարինելու մասին» (ՍՍՌՄ օ-
րենքների ժողովածու, 1936 թ. № 40, էջ՝
339).
բ) ՍՍՌՄ Ժողկոմսովետի 1938 թվականի
փետրվարի 1-ի № 102 որոշումը՝ «Կոլխոզ-

ների դրամական եկամտահարկով հարկելու կարգի վերաբերյալ ՍՍՌՄ Ֆինժողկոմատի հրահանգի հաստատման մասին» (ՍՍՌՄ որոշումների ժողովածու, 1938 թ., № 8, էջ՝ 48)։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝ Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Քարտուղար՝ Ա. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ*
*1 մարտի, 1941 թ.*

Պատասխանատու խմբագիր՝

Դ. Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



ՎՖ 530. *Պատվեր* № 306, *Տիրաժ*՝ 10.000
*Ստորագրված է տպագրության* 28/III 1941 *թ.*
*Տպագրական* 1 ¾ *մամուլ, մեկ մամուլում* 40.000 *տառանիշ*

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան